Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի Արդյունաբերական արտադրության և շինարարության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

ՀԿԿ Կենտկոմի Գյուղատնտեսական արտադրության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ԱՊՐԻԼ 8 1963




Կեցցե աշխատավորների միջազգային համերաշխության օրը՝ մայիսի 1-ը

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

## СОДЕРЖАНИЕ





Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, комната 71, телефон 2-52-78.



# ՄԱՅԻՍԻ 1-Ը՝ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՕՐԸ

*Ահա 73-րդ տարին է, որ ամբողջ աշխարհի աշխատավորները տոնում են իրենց միջազգային համերաշխության օրը՝ Մայիսի 1-ը։ 1886 թվականի մայիս ամսվա առաջին օրերին Ամերիկայի Միացյալ Նահանգներում սկսվեց գործադուլային հզոր շարժում, որը ավելի ուժեղ թափով ծավալվեց հատկապես Չիկագոյում։ Այստեղ 350 հազար բանվորներ դուրս եկան միտինգի՝ պահանջելով բարելավել իրենց տնտեսական վիճակը, հարգել մարդկային արժանապատվությունը, սահմանել 8-ժամյա աշխատանքային օր։*

*Բայց ամերիկյան իմպերիալիստները բանվորների օրինական և արդարացի պահանջներին անմարդկային պատիժներով պատասխանեցին։ Նրանք միտինգի կազմակերպիչներին մահվան դատապարտեցին, բազմաթիվ գործադուլավորների բանտեր նետեցին ու տաժանակրության քշեցին։*

*Եվ ահա 1886 թվականի Չիկագոյի դեպ-*

քերը նշանավորելու նպատակով 2-րդ Ինտերնացիոնալի Փարիզի կոնգրեսը Մայիսի 1-ը հռչակեց աշխատանքի մարդկանց համաշխարհային ռևոլյուցիոն տոն, ամբողջ աշխարհի պրոլետարիատի մարտական ուժերի ստուգատեսի օր։ Այդ օրվանից ամբողջ աշխարհի աշխատավորները սկսեցին տոնել Մայիսի 1-ը։

Սկսած 1890 թվականից Մայիսի 1-ը տոնվում է նաև Ռուսաստանում, որտեղ բանվոր դասակարգը հանուն ազատության պայքարում էր ցարական ինքնակալության, կապիտալիստների և կալվածատերերի անողոք շահագործման դեմ։ Բանվոր դասակարգի հերոսական պայքարի շատ ու շատ դեպքեր կապված են Մայիսի 1-ի օրվա հետ։ Բարիկադային կռիվներ Պետերբուրգում, քաղաքական դեմոնստրացիաներ Խարկովում և այլն։

Մեծ Լենինը բարձր է գնահատել Մայիսի 1-ը, աշխատավորների միջազգային համերաշխության օրը։ Մայիսի 1-ը նա անվանել է խաղաղության և սոցիալիզմի իդեալի հետ կապված մարդկության լավագույն ցանկությունների և հույսերի տոն։ Նա ընդգծել է, որ Մայիսի 1-ի օրը բոլոր երկրների բանվորները տոնում են իրենց արթնացումը դեպի գիտակից կյանք, տոնում են



իրենց միավորումը ամեն մի բռնության դեմ և մարդու ձեռքով մարդու ամեն մի ճնշման դեմ մղվող պայքարում, միլիոնավոր աշխատավորներին քաղցից, աղքատությունից ու ստորացումից ազատագրելու պայքարում։ «Երկու աշխարհ կանգնած են իրար դեմ այդ մեծ պայքարում. կապիտալի աշխարհը և աշխատանքի աշխարհը, շահագործման ու ստրկության աշխարհը, եղբայրության ու ազատության աշխարհը»,— ասել է Վ. Ի. Լենինը։

Այնուհետև 1905 թվականի մեծ իրադարձությունների նախօրյակին Վ. Ի. Լենինը նշում էր, որ համայն աշխարհի բանվորները Մայիսի 1-ին տոնում են իրենց արթնացումը դեպի լույսն ու գիտությունը, իրենց միավորումը մի եղբայրության, միության մեջ՝ պայքարելու ընդդեմ ամեն մի կեղեքման, կամայականության, շահագործման, հանուն հասարակության սոցիալիստական կառուցման։ «Կորչի թշնամանքը զանազան ազգությունների կամ զանազան կրոնների բանվորների միջև»,— ասում էր Լենինը։ Նա պարզաբանում էր, որ այդպիսի թշնամանքը ձեռնտու է միայն կողոպտիչներին ու բռնակալներին, որոնք ապրում են պրոլետարիատի խավարամտության ու անջատվածության շնորհիվ։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից հետո սովետական ժողովուրդը Մայիսի 1-ը սկսեց տոնել ազատ պայմաններում, որպես ամբողջ աշխարհի աշխատավորների միջազգային համերաշխության օր։ Մեր երկրում Մայիսի 1-ը նշանավոր է նաև նրանով, որ այն սերտորեն կապված է հիշակավոր կոմունիստական շաբաթօրյակների հետ, այն նոր շարժման հետ, որ վառ կերպով արտահայտում է բանվորների աշխատանքային նոր հարաբերությունները։

Մայիսյան օրերին ամբողջ աշխարհում կրկին և կրկին բարձր է հնչում կոմունիստների մարտական նշանաբանը՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»։

Սովետական Միությունը իր օրինակով ռևոլյուցիոնացնում է կապիտալիստական աշխարհի աշխատավորների մտքերը, նրանց պայքարի է ոգեշնչում ընդդեմ իմպերիալիզմի։ Մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցումը դարձել է ժողովրդի անմիջական գործնական խնդիրը։

Սովետական ժողովուրդը ի լուր աշխարհի ասում է, որ իր նպատակն է խաղաղություն, ստեղծագործ աշխատանք, կոմունիզմ։

Կոմունիզմ կառուցող մեր մեծ և հզոր



Սովետական Միությունը աշխատավորների միջազգային համերաշխության օրը, ի ուրախություն աշխարհի բոլոր աշխատավորների, մեծագույն հաջողություններով է դիմավորում։

Շնորհիվ լենինյան Կենտրոնական Կոմիտեի իմաստուն ղեկավարության, մեծ հաջողությամբ է կատարվում ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, յոթնամյա պլանը։ Անցած 4 տարում երկրի արդյունաբերության համախառն արտադրանքը պլանով նախատեսված 39 տոկոսի փոխարեն աճել է 45 տոկոսով։ Չորս տարում պլանից ավելի արտադրվել է 28 միլիարդ ռուբլու արտադրանք։

«Սովետական մարդիկ,— ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը իր ընտրողների հետ հանդիպում ունենալիս,— լավ տեմպ են պահպանում Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ տեղի ունեցող խաղաղ տնտեսական մրցության մեջ»։ Այս կապակցությամբ նա փաստական տվյալներ է բերում այն մասին, թե ինչպես անցած 5 տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի աճը ՍՍՌՄ-ում հավասար է 48 տոկոսի, իսկ ԱՄՆ-ում ընդամենը 8 տոկոսի։ Ներկայումս ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը կազմում է ԱՄՆ-ի

արտադրանքի մոտավորապես 63 տոկոսը՝ 1957 թվականի 47 տոկոսի համեմատությամբ։ 1961 թվականի համեմատությամբ, 1962 թվականին բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրությունը փոխվեց հետևյալ կերպ՝ ՍՍՌՄ-ում բնակչության մեկ շնչին ընկնող պողպատի արտադրությունը աճել է 6 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում կրճատվել է մեկուկես տոկոսով, էլեկտրաէներգիայինը՝ ՍՍՌՄ-ում ավելացել է 11 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում ավելացել է 6 տոկոսով, նավթինը՝ ՍՍՌՄ-ում ավելացել է 10 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում կրճատվել է 0,5 տոկոսով, ՍՍՌՄ-ում բնակչության մեկ շնչին ընկնող ցեմենտի արտադրությունը ավելացել է 11 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում միայն երկու տոկոսով։

Մեր երկրում անցած չորս տարում գործարկվել են ավելի քան 3.700 նոր, խոշոր պետական արդյունաբերական ձեռնարկություններ և ստեղծվել են ավելի շատ արտադրողական կարողություններ, քան նախապատերազմյան բոլոր հնգամյակներին։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի պետական կապիտալ ներդրումները կազմեցին 107 միլիարդ ռուբլի՝ նախատեսվածից 6 միլիարդով ավելի։



Մեր երկրում խոշոր աշխատանք է կատարվել նոր տեսակի բարձր արտադրողական մեքենաներ, մեխանիզմներ, ապարատներ ու սարքեր արտադրության մեջ ներդնելու ուղղությամբ։ Միայն անցած տարում գծագրվել և ժողովրդական տնտեսության համար պատրաստվել են մեքենաների, մեխանիզմների, ապարատների և այլ սարքավորումների մոտավորապես չորս հազար նոր կարևորագույն տիպեր և ստուգման ու արտադրության ավտոմատացման տարբեր սարքերի մոտավորապես 1.300 նոր տիպեր։ Յուրացվել և ՍՍՌՄ-ում առաջին անգամ պատրաստվել են արտադրանքի մոտավորապես 900 նոր կարևորագույն տեսակներ։ Դրա հետ մեկտեղ տարվա ընթացքում արտադրությունից հանվել են հնացած կոնստրուկցիայի մոտավորապես 350 անուն զանազան մեքենաներ, սարքեր ու գործիքներ։

Սովետական երկրի էկոնոմիկայի նոր և ավելի պանծալի վերելք տեղի կունենա այս տարի։ 1963 թվականին ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը յոթնամյակի առաջադրանքը կգերազանցի մոտավորապես 7 միլիարդ ռուբլով։ Իսկ 5 տարում ընդամենը կարտադրվի յոթնամյա պլանով նախատեսվածից 35 միլիարդ ռուբլով շատ արդյունաբերական արտադրանք։

Արդյունաբերության՝ հինգ տարում գործարկված նոր, հիմնական ֆոնդերի բաժինը կկազմի մոտավորապես 50 տոկոս։ Դա բացառիկ նպաստավոր պայմաններ կստեղծի աշխատանքի արտադրողականության հետագա վերելքի համար։

Այս տարի քիմիական արդյունաբերության զարգացման նպատակով կապիտալ ներդրումները կկազմեն համարյա 1,7 միլիարդ ռուբլի։ Քիմիական ամբողջ արտադրանքի արտադրությունը կավելանա 17 տոկոսով։ Մեծ չափերով կավելանա սև և գունավոր մետաղների արտադրությունը։ Չուգունի ձուլումը 1963 թվականին կկազմի ավելի քան 59 միլիոն տոննա, իսկ պողպատինը՝ 80 միլիոն տոննա։ Կավելանա էլեկտրաէներգիայի արտադրությունը։ Մեկ տարում պետք է գործարկվեն այնքան կարողություններ, որոնք հավասար են 15 Դնեպրոգէսի կամ այնպիսի չորս հսկաների, ինչպիսին են Վոլգայի Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը։ 1963 թվականին ՍՍՌՄ-ում էլեկտրաէներգիայի արտադրությունը կաճի 11 տոկոսով և կկազմի 407,9 միլիարդ կիլովատ-ժամ։ Վառելիքի բոլոր տեսակների արդյունահանման ընդհանուր աճը կկազմի 6,3 տոկոս, իսկ նավթի արդյունահանումը կավելանա 10 տոկոսով և կկազմի 205 միլիոն տոննա՝ 5 միլիոն տոննայով ավելի, քան նախատեսված էր յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով։ Գազի արդյունահանումը կաճի 17 տոկոսով։



Առաջիկայում ավելի բարձր զարգացման կհասնի մեքենաշինությունը։ Մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի արտադրության ընդհանուր ծավալը 1963 թվականին կմեծանա 11,5 տոկոսով, ընդ որում զգալիորեն կբարձրանա առավել արտադրողական ու խնայողաբեր մեքենաների տեսակարար կշիռը։ Այս տարի կարտադրվի 325 հազար տրակտոր (13 տոկոսով ավելի, քան 1962 թվականին)։

Թեթև արդյունաբերության զարգացման համար կապիտալ ներդրումները, կավելանան 22 տոկոսով։ Այս տարի կարտադրվի վեց միլիարդ 600 միլիոն մետր բամբակե գործվածք, 944 միլիոն մետր բրդե և 518 միլիոն մետր վուշե գործվածք։

Այս տարի կավելանա սննդամթերքների արտադրությունը։ Մսի արտադրությունը կավելանա 440 հազար տոննայով, որը 1962 թվականի համեմատությամբ 10 տոկոսով ավելի է։ Յուղի արտադրությունը կանցնի մեկ միլիոն տոննայից, որը մեկուկես անգամ մեծ է ԱՄՆ-ում յուղի արտադրության ծավալից։

Քիչ հաջողություններ չունենք երկրի գյուղատնտեսության զարգացման գործում։

Մեր երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները մեծ քայլ կատարեցին հողի օգտագործումը բարելավելու ասպարեզում։ Անցած տարի խոտաբույսերի ցանքատարածությունները նվազեցին 8,8 միլիոն հեկտարով, մաքուր ցելերինը՝ 8,7 միլիոն հեկտարով և վարսակինը՝ 4,6 միլիոն հեկտարով։ Խոտաբույսերի ցանքատարածությունների նվազեցման հաշվին, ինչպես նաև նոր հողերի հետագա հերկման հաշվին ավելացան բարձր բերքատու և արժեքավոր կուլտուրաների՝ ցորենի, եգիպտացորենի, հատիկալոբազգիների, կերի ճակնդեղի ցանքատարածությունները։

Անցած տարի գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները կազմում էին 216 միլիոն հեկտար և 1961 թվականի համեմատությամբ ավելացել էին 11,4 միլիոն հեկտարով։ Հացահատիկային և հատիկալոբազգի կուլտուրաների ցանքատարածությունները կազմեցին 135,9 միլիոն հեկտար՝ 1961 թվականի 128,3 միլիոն հեկտարի դիմաց։

Չնայած երկրի մի շարք գյուղատնտեսական շրջաններում եղած կլիմայական անբարենպաստ պայմաններին, հացահատիկի



համախառն բերքը անցյալ տարի կազմեց ինը միլիարդ փութ կամ 147,5 միլիոն տոննա։ Մեր երկիրը դեռ երբեք այդքան հացահատիկ չէր հավաքել։ Անցած աշնանը կոլտնտեսությունները և սովխոզները կատարեցին աշնանացան հացահատիկային կուլտուրաների 5.3 միլիոն հեկտարով ավելի ցանք և 12,3 միլիոն հեկտարով ավելի ցրտահերկ, քան 1961 թվականին։

1962 թվականին ՍՍՌՄ գյուղատնտեսությունը արտադրեց եգիպտացորեն՝ 23,3 միլիոն տոննա, հատիկալոբազգի կուլտուրաներ՝ 7,6 միլիոն տոննա, բամբակ՝ 4,3 միլիոն տոննա, շաքարի ճակնդեղ (գործարանային)՝ 47,8 միլիոն տոննա, կերացու ճակնդեղ՝ 22,9 միլիոն տոննա, արևածաղիկ՝ 4.8 միլիոն տոննա, կարտոֆիլ՝ 68,8 միլիոն տոննա։

Աճեց անասնապահական մթերքների արտադրությունը։ Շարունակվում է անասնապահության հետագա զարգացումը։ Անցած տարի խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 4.7 միլիոն գլխով, այդ թվում՝ կովերինը՝ 1,6 միլիոն գլխով, խոզերի գլխաքանակը աճեց 3 միլիոն գլխով, ոչխարներինը և այծերինը՝ 1,8 միլիոն գլխով։ Նույն ժամանակամիջոցում մեր երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները

արտադրեցին միս (սպանդանոցային քաշով)՝ 9,4 միլիոն տոննա, կաթ 64,2 միլիոն տոննա, բուրդ՝ 370 հազար տոննա, ձու՝ 30,2 միլիարդ հատ։

Անասնապահական մթերքների արտադրությունն աճեց գլխավորապես մթերատու անասունների գլխաքանակի ավելացման հաշվին։ Անցած տարի ավելացան նաև անասնապահական մթերքների գնումները։ Եթե 1962 թվականը համեմատենք 1953 թվականի հետ, ապա հացահատիկի գնումները աճել են ուղիղ երկու անգամ, անասունների և թռչունների գնումները՝ ավելի քան երկուսուկես անգամ, կաթինը՝ գրեթե երեք անգամ։

Առաջիկայում դեռևս շատ բան կարվի գյուղատնտեսական մթերքների նկատմամբ ժողովրդի պահանջները լրիվ բավարարելու համար։ Պարտիան իրագործում է մի շարք խոշոր միջոցառումներ, որպեսզի հասնի գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի։ Մեր երկրի բոլոր կոլտնտեսականները, սովխոզների բանվորները, գյուղատնտեսության մասնագետները ոչ մի ջանք չեն խնայում պարտիայի նշած բնագծերը նվաճելու համար։

Կոմունիստական պարտիան իր առջև դրել է համաշխարհային պատմական նշանակու-



թյուն ունեցող խնդիր՝ Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ։ Այդ մեծ խնդիրը մեր երկրում հաջողությամբ լուծվում է։ Օրինակ, ՍՍՌՄ ազգային եկամտի աճի տեմպերը զգալիորեն գերազանցում են կապիտալիստական երկրների ազգային եկամտի աճի տեմպերը։ Վերջին տասը տարում (1953—1963 թթ.) Սովետական Միությունում ազգային եկամտի աճի տարեկան միջին տեմպը կազմել է 9,2 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ում՝ միայն 2,7 տոկոս։ Մեկ աշխատողի հաշվով ՍՍՌՄ աշխատավորների ռեալ եկամուտները անցած չորս տարում ավելացել են 18 տոկոսով։

Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման կարևորագույն ցուցանիշն է զանազան վճարումների և արտոնությունների աճը, որոնք բնակչությունը սպառման հասարակական ֆոնդերից ստանում է աշխատավարձից և կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունից դուրս։ Չորս տարում այդ վճարումների և արտոնությունների չափը 1958 թվականին եղած 21,5 միլիարդ ռուբլուց 1962 թվականին հասավ 28,4 միլիարդ ռուբլու։

Մեր երկրում տարեցտարի մեծանում է

մանրածախ ապրանքաշրջանառությունը։ Անցած չորս տարում բնակչությանը ապրանքների վաճառքը աճեց գրեթե մեկ երրորդով, իսկ այնպիսի ապրանքներինը, ինչպիսիք են, օրինակ, մսամթերքները՝ գրեթե 40 տոկոսով, կաթի վաճառքը՝ գրեթե մեկուկես անգամ, շաքարինը՝ 40 տոկոսով։ Հագուստեղենի վաճառքը ավելացավ 48 տոկոսով, կաշվե կոշկեղենինը՝ 39 տոկոսով։

Շնորհիվ այն բանի, որ պարտիան և կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում սովետական մարդկանց նյութական բարեկեցության աճի և նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ, անընդհատ ավելանում է նրանց գնողունակությունը։ Եթե տասը տարի առաջ բնակչությանը վաճառվում էր տարեկան 70—100 հազար հեռուստացույց, իսկ անցած չորս տարում վաճառվել է տարեկան միջին հաշվով մեկուկես միլիոն հեռուստացույց։ Վերջին չորս տարում վաճառվել է գրեթե 2,5 միլիոն սառնարան, ավելի քան 4,6 միլիոն լվացքի մեքենա կամ չորս անգամ շատ, քան նախորդ չորս տարում։

Միայն անցյալ տարի ՍՍՌՄ ազգային եկամուտը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացել է 6 տոկոսով, այսինքն՝ մոտավորապես 9 միլիարդ ռուբլով։



Աշխատավորների եկամուտները, մեկ աշխատողի հաշվով, յոթնամյակի չորս տարում ավելացել են 18 տոկոսով, այդ թվում անցած տարում՝ 3 տոկոսով։

Անցյալ տարի բնակչությունը սպառման հասարակական ֆոնդերից ժողովրդական կրթության, բուժսպասարկման, սոցիալական ապահովման և տարբեր վճարումների ու արտոնությունների համար ստացավ 28,4 միլիարդ ռուբլի՝ 1961 թվականի 26,4 միլիարդ ռուբլու դիմաց։

Միայն անցյալ տարի պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը կազմեց 86,3 միլիարդ ռուբլի։ Նախորդ տարվա համեմատությամբ մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը ավելացավ 6,1 միլիարդ ռուբլով կամ համադրելի գներով՝ 6 տոկոսով, իսկ գյուղական վայրերում՝ 9 տոկոսով։

Սոցիալիզմի երկրում վիթխարի աշխատանք է կատարված նաև բնակարանային շինարարության բնագավառում։ Արտասահմանյան բազմաթիվ դելեգացիաներ այցելելով մեր երկիրը նշում են, որ կապիտալիստական ոչ մի պետություն իր պատմության ընթացքում չի տեսել բնակարանային շինարարության այնպիսի թափ, ինչպիսին կա ՍՍՌՄ-ում։







ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի հայտնի որոշման ժամանակվանից, 1957 թվականի հունվարի 1-ից մինչև 1963 թվականի հունվարի 1-ը երկրի քաղաքներում ու բանվորական ավաններում կառուցվել են 12 միլիոն բնակարան, իսկ գյուղական վայրերում ավելի քան 3,8 միլիոն բնակելի տուն։ Այդ վեց տարում նոր բնակարաններ են ստացել և իրենց բնակարանային պայմանները բարելավել են մոտավորապես 75 միլիոն մարդ, մեր երկրի ամբողջ բնակչության մեկ երրորդը։

Անցած տարի պետական միջոցների հաշվին, պետական վարկի օգնությամբ, բնակչության միջոցների հաշվին քաղաքներում և բանվորական ավաններում շահագործման հանձնվեցին ավելի քան 81 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, այսինքն՝ ավելի քան 2 միլիոն նոր բարեկարգ բնակարան։ Ընդսմին, պետական բնակարանային շինարարության հաշվին շահագործման է հանձնվել ավելի քան 60 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածություն կամ 7 տոկոսով ավելի, քան 1961 թվականին։

Ներկայումս մեր երկրում յուրաքանչյուր 20 րոպեում շահագործման է հանձնվում 5



հարկանի տուն։ Ամեն ամիս նոր բնակարան են տեղափոխվում մոտ 800 հազար մարդ։

1963 թվականին պետական պլանով բնակարանային շինարարության վրա նախատեսված է ծախսել 5,2 միլիարդ ռուբլի։ Բացի դրանից, պետությունը բնակարանային շինարարական կոոպերացիային և անհատական բնակարաններ կառուցողներին կտա 344 միլիոն ռուբլի գումարի վարկ։

Այժմ, անգամ բուրժուական տնտեսագետները և ճարտարապետները ընդունում են, որ Սովետական Միությունը աշխարհում առաջին տեղն է գրավում բնակարանային շինարարության բնագավառում։ ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր հազար մարդու համար կառուցվում է 13,6 բնակարան, Անգլիայում՝ 5,9, Ֆրանսիայում՝ 6,9։

Մեծ Հոկտեմբերից հետո, Սովետական Միության քարտեզի վրա երևացել են 900 նոր քաղաքներ։ Ներկայումս Սովետական Միությունում կան ավելի քան չորս հազար յոթ հարյուր քաղաքային բնակավայր։

Մեր երկրում 1953 թվականից հետո բնակչությունը աճել է 29 միլիոն մարդով, որը ավելի շատ է, քան Շվեդիայի, Նորվեգիայի, Հոլանդիայի և Դանիայի բնակչությունը միասին վերցրած։

Սովետական Միության բնակչության թիվը մեկ տարում ավելացավ 3,3 միլիոնով և 1963 թվականի հունվարի մեկի տվյալներով մեր երկիրն ունի 223 միլիոն բնակիչ։

Պարտիան անդադրում հոգ է տանում ժողովրդի բարօրության նկատմամբ։ Ամեն տարի պետական բյուջեից հսկայական միջոցներ են հատկացվում ձրի կրթությանն ու բժշկական սպասարկմանը, սոցիալական ապահովությանը և ապահովագրությանը։ Յոթնամյակի չորս տարում այդ ծախսերը կազմեցին ավելի քան 100 միլիարդ ռուբլի և մեծապես գերազանցեցին յոթնամյա պլանի հաշվարկումները։ Այս տարվա բյուջեում սոցիալ-կուլտուրական միջոցառումների հատկացումները հաստատված են 31 միլիարդ ռուբլի։

Մեր երկրում մոտ 60 միլիոն մարդ սովորում է։ Միայն հանրակրթական դպրոցներում, այդ թվում և բանվորական ու գյուղական երիտասարդության դպրոցներում, սովորում են 42 միլիոն մարդ, որը անցյալ տարվանից երեք միլիոնով ավելի է։ Սովետական Միության բարձրագույն ուսումնական հաստատություններում կան մոտ 3 միլիոն ուսանող, այդ թիվն ավելի քան 20 անգամ շատ է ցարական Ռուսաստանում եղած



ուսանողների թվից և նույնքան անգամ շատ, քան այժմ ուսանողներ կան Անգլիայում, Ֆրանսիայում, Իտալիայում և Արևմտյան Գերմանիայում միասին վերցրած։ Սովետական Միությունը ամեն տարի իր բուհերի միջոցով 3 անգամ շատ ինժեներ է տալիս, քան ԱՄՆ-ը։

Ամեն տարի մեր երկրում հսկայական միջոցներ են տրամադրվում աշխատավորների կուլտուրական սպասարկման համար։ Միայն 1956—1961 թվականներին ՍՍՌՄ-ում մոտ 3 հազար կինոթատրոնի շենք է կառուցվել։ ՍՍՌՄ գյուղական շրջաններում կան ավելի քան 100 հազար ակումբ, կուլտուրայի տներ ու պալատներ, ավելի քան 100 հազար գրադարան, 119 հազար կինոսարքավորում։

Ծաղկում ու զարգանում է առաջավոր սովետական գիտությունը, որը իր մեծագույն նվաճումներով ձեռք է բերել համաշխարհային ճանաչում ու փառք։

Սովետական գիտնականներն էին, որ ստեղծեցին երկրագնդի առաջին արհեստական արբանյակները։ Սովետական գիտնականների կոլեկտիվ միտքն էր, որ դեպի տիեզերք ուղարկեց սովետական առաջին մարդկանց, որոնք զարմանահրաշ «Վոստոկ» տիեզերանավերով կատարած թռիչք-

ներով մի նոր, խոշոր քայլ կատարեցին տիեզերքի նվաճման գործում:

Մեր գիտնականները իրենց անխոնջ աշխատանքով հսկայական դեր են խաղում երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գործում:

Սովետական Միությունում այժմ գործում են բազմաթիվ գիտական հիմնարկություններ, որոնց ստեղծագործ կոլեկտիվները հաջողությամբ լուծում են ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի, աստղագիտության, ֆիզիոլոգիայի, բժշկության և այլ բազմաքանակ ու տարբեր հրատապ նշանակություն ունեցող հարցեր:

Մենք ամեն օր, յուրաքանչյուր ժամ ականատես ենք լինում սովետական գիտության մեծ նվաճումներին: Մեր պարտիայի լենինյան հոգատարությունը, որով շրջապատված են սովետական գիտնականները, նրանց մղում է դեպի գիտական նոր սխրանքների ի փառս մեր մեծ հայրենիքի զարգացման ու հզորացման:

Յոթնամյակի հինգերորդ սարվա գարնան այս հիասքանչ տոնը՝ աշխատավորների միջազգային համերաշխության տոնը, աշխատանքային հսկայական հաջողություններով է նշում հայ ժողովուրդը: Բազմաչարչար ու



մշտական հալածանքի ենթարկված հայ ժողովուրդը 43 տարի առաջ կանգնելով հոկտեմբերյան ազատարար դրոշի տակ, ձեռք բերեց ազգային վերածնունդ, ստացավ ստեղծագործ աշխատանքի անսահմանափակ հնարավորություն: Նա վերականգնեց իր քանդված օջախը, կերտեց, կառուցեց, շենացրեց Սովետական Հայաստանը, որն այժմ ՍՍՌՄ բոլոր եղբայրական ժողովուրդների հետ կռած գրանիտյա բարեկամությամբ զորացած՝ գնում է դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները:

1963 թվականի Մայիսի 1-ը մեր ռեսպուբլիկայի աշխատավորները դիմավորում են աշխատանքային բուռն վերելքի պայմաններում: Մեծ են մեր նվաճումները արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի զարգացման բնագավառում: Միայն յոթնամյակի անցած չորս տարում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի աճը կազմեց 150 տոկոս, երկրին լրացուցիչ տրվեց 144 միլիոն ռուբլու արտադրանք: Հպարտությամբ պետք է նշել, որ մեքենաշինության ու հաստոցաշինության բնագավառում մեր ռեսպուբլիկան անցավ երկրի առաջավոր և ինդուստրիալ տնտեսական շրջանների շար-

բր։ Կար ժամանակ, երբ հաստոցներ էր արտադրում միայն Երևանը, իսկ այժմ հաստոցաշինական նոր գործարաններ են կառուցվել Լենինականում, Կիրովականում և Լուսավանում։ Սովետական Հայաստանը դառնում է մեր երկրի մոլիբդենի զգալի մասը։

Հսկայի քայլերով է առաջ գնում ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը։ Վերջերս շարք մտան մեծ քիմիայի խոշորագույն ձեռնարկությունները՝ Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանը և Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի ացետացելյուլոզի արտադրության կոմպլեքսը, որը մի ամբողջ գործարան է գործարանի ներսում և իր կարողությամբ խոշորագույններից մեկն է Սովետական Միությունում։

Յոթնամյակի անցած չորս տարիներին ռեսպուբլիկայում կառուցվել և շահագործման են հանձնվել 82 նոր գործարան և 87 խոշոր ցեխ ու տեղամաս։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը միայն անցած չորս տարիներին յուրացրեց արտադրանքի ավելի քան 400 նոր տեսակ։ Վերջին չորս տարում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 20,1 տոկոսով։ Կատարվում է նաև արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը։



Սովետական Հայաստանի արդյունաբերության արագ զարգացման և նրա տեխնիկական բարձր մակարդակի վառ ցուցանիշն է մեր արտահանության անընդհատ աճը։ 1962 թվականին Սովետական Հայաստանի 46 արդյունաբերական ձեռնարկություններ արդյունաբերական արտադրանք էին մատակարարում աշխարհի 56 երկրների, այդ թվում այնպիսի երկրների, ինչպիսիք են՝ Անգլիան, Ֆրանսիան, ԳՖՌ-ն, Ճապոնիան, Իտալիան, Ավստրիան և Բելգիան։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության հըսկայական վերելքի համար մենք պարտական ենք մեր փառապանծ բանվոր դասակարգի, գիտնականների, ինժեներա-տեխնիկական կադրերի հերոսական աշխատանքին։ Անցած չորս տարում մեր ռեսպուբլիկայի բանվոր դասակարգի բանակը աճել է 40 հազարով, գիտական և ինժեներա-տեխնիկական կադրերը՝ 6 հազարով։ Այժմ կոմունիստական աշխատանքի շարժմանը մասնակցում է 105 հազար մարդ։

Ռեսպուբլիկայում մեծ թափ է ստացել կապիտալ շինարարությունը։ Վերջին չորս տարում ռեսպուբլիկայի ժողովրդական

տնտեսության մեջ գրեթե այնքան կապիտալ ներդրումներ են կատարվել, որքան 36 տարում, այսինքն 1921-ից մինչև 1956 թվականը։

Իրագործելով ՍՄԿՊ XXI և XXII համագումարների, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումները, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները լուրջ հաջողությունների են հասել գյուղատնտեսության զարգացման գործում։ Անցած չորս տարում 31 հազար հեկտարով ավելացել են ոռոգելի հողատարածությունները և հասել 256 հազար հեկտարի։ Ջրով ապահովված է 75 հազար հեկտար արոտավայր։

Այժմ ռեսպուբլիկայում լայն թափով աշխատանքներ են կատարվում ջրատնտեսական շինարարության ասպարեզում։ 1962 թվականից սկսվել է Ապարանի ջրամբարի կառուցումը՝ 80 միլիոն խորանարդ մետր տարողությամբ, որը կարևոր նշանակություն ունի ոռոգելի հողերը ավելացնելու և Սևանա լիճը պահպանելու գործում։

Անցած տարիներին ռեսպուբլիկայի ձեռք բերած նվաճումները հնարավորություններ ստեղծեցին գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողներին ստանձնել նոր, բարձր պարտավորություններ։ Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են յոթնամյակի 5-րդ տարում արտադրել՝ 279 հազար տոննա հացահատիկ, 30 հազար տոննա բամբակ, 13,7 հազար տոննա ծխախոտ, 108 հազար տոննա ճակնդեղ, 151 հազար տոննա խաղող, 32,6 հազար տոննա պտուղ, 121 հազար տոննա բանջարեղեն, 87 հազար տոննա կարտոֆիլ, 42,5 հազար տոննա միս, 223 հազար տոննա կաթ, 3.240 տոննա բուրդ, 63,8 միլիոն հատ ձու։

Ոչ մի կասկած չկա, որ ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները այս բարձր պարտավորությունները պատվով կկատարեն։

Բուռն կերպով զարգանում է Սովետական Հայաստանի կուլտուրան։ Մեր գրողները, նկարիչները, կոմպոզիտորները, արվեստի աշխատողները ստեղծել են մի շարք արժեքավոր, մնայուն գործեր, որոնք նպաստում են աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը։

Առանձնապես նշանակալի են մեր հաջողությունները ժողովրդական կրթության բնագավառում։ Սովետական Հայաստանը համատարած գրագիտության երկիր է։ Այն ծածկված է բարձրագույն ուսումնական, միջնակարգ մասնագիտական հաստատությունների, տեխնիկումների ու դպրոցների

լայն ցանցով: 1958 թվականի համեմատու-
թյամբ, բուհերի ուսանողների թիվը աճել
է 36 տոկոսով, տեխնիկումներինը՝ 47 տո-
կոսով, գիշերօթիկ դպրոցներում սովորող-
ներինը՝ մոտ 3 անգամ: 1.247 դպրոցներում
այժմ սովորում են 386 հազար 600 աշա-
կերտ, իսկ 1914 թվականին Հայաստանում
սովորողների թիվը հազիվ հասնում էր 18
հազարի:

Ռեսպուբլիկայում տարեցտարի աճում է
գիտահետազոտական հիմնարկների թիվը:
Այժմ Սովետական Հայաստանում գործում
է 84 գիտահետազոտական հիմնարկ, որտեղ
աշխատում են 6.177 գիտնական, այդ թվում՝
գիտությունների 180 դոկտոր և գիտություն-
ների 1.650 թեկնածու: Սովետական Հայաս-
տանի գիտնականները իրենց նշանակալի
բաժինն ունեն մեր երկրի էկոնոմիկայի
զարգացման գործում:

Անշեղորեն բարձրանում է աշխատավոր-
ների կենսամակարդակը: Ազգային եկա-
մուտը երեք տարում (1958—1961 թթ.) ա-
ճել է 30,2 տոկոսով: 30 տոկոսով ավելա-
ցել են բնակչության դրամական եկամուտ-
ները, այդ թվում կոլտնտեսականների
դրամական եկամուտները՝ 11 տոկոսով:
Աճել է ռեսպուբլիկայի բնակչության գնո-
ղունակությունը: 1959 թվականին 11.300



հեռուստացույցի դիմաց 1962 թվականին
վաճառվել է 20.000 հատ, լվացքի մեքենա-
ներ համապատասխանորեն՝ 9.000 և 16.200,
դաշնամուրներ՝ 741 և 1.305: Զգալիորեն ա-
վելացել է նաև կահույքի, գործվածքների,
հագուստեղենի, կաթնամթերքների, մսա-
մթերքների և այլ արտադրանքների վա-
ճառքը:

Մեծ թափով շարունակվում է բնակարա-
նային շինարարությունը: Անցած չորս տա-
րում կառուցվել և շահագործման է հանձ-
նըվել մեկ միլիոն 814 հազար քառակուսի
մետր ընդհանուր բնակելի տարածություն
կամ մոտ 45 հազար բնակարան: Այդ ա-
վելի է, քան կառուցվել էր սովետական
իշխանության անցած առաջին 30 տարում:

Չորս տարում կառուցվել են նոր դպրոց-
ներ՝ 52.400 աշակերտական տեղով, հի-
վանդանոցային հիմնարկներ՝ 1395 մահճա-
կալով, մանկական նախադպրոցական հիմ-
նարկներ՝ ավելի քան 7 հազար տեղով:

Աճել է ռեսպուբլիկայի բնակչությունը:
Եթե 1959 թվականին ռեսպուբլիկայի
բնակչությունը կազմում էր մեկ միլիոն 764
հազար, ապա այժմ, 1962 թվականի վերջի
տվյալներով, այն հասել է 2 միլիոն 21 հա-
զարի կամ աճել է մոտավորապես 15 տո-
կոսով:

Իրագործելով Հայաստանի կոմպարտիայի XXII համագումարի որոշումները, ինչպես անցյալ տարի, այնպես էլ այս տարի շարունակվում է արտասահմանյան հայերի հայրենադարձությունը։ Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայից, Կիպրոսից ու Իրանից վերադարձած մեր հայրենակիցները այժմ ապրում և աշխատում են Լենինականում, Կիրովականում, Իջևանում և Լուսավանում։

Ռեսպուբլիկայի աշխատավորները իրենց հարազատ եղբայրներին ու քույրերին՝ Սովետական Հայաստանի նոր քաղաքացիներին, ընդունում են ջերմությամբ։ Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը, Սովետական Հայաստանի կառավարությունը, բոլոր աշխատավորներն անում են ամեն ինչ ռեսպուբլիկայի նոր քաղաքացիների համար աշխատելու և նորմալ ապրելու բոլոր պայմանները կազմակերպելու գործում։

Վիթխարի խնդիրներ են դրված մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատողների առջև։ 1963 թվականին արդյունաբերության աշխատողների կարևորագույն խնդիրն է՝ տարեկան պլանը գերակատարել առնվազն 2,5 տոկոսով, որը թույլ կտա տարեվերջին գերազան-



ցել յոթնամյա պլանով նախատեսված արդյունաբերության զարգացման մակարդակը։

Ռեսպուբլիկայի շինարարները պետք է ավարտեն 75 կարևոր կառույցների՝ գործարանների, ֆաբրիկաների և խոշոր ցեխերի կառուցման աշխատանքները։ Լայն թափով շարունակվելու է նաև բնակարանային շինարարությունը։ Բավական է միայն ասել, որ 1963—1965 թվականներին կառուցվելու է 2 միլիոն 243 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Կկառուցվեն հանրակրթական դպրոցներ՝ 44,7 հազար աշակերտական տեղով, նախադպրոցական հիմնարկներ՝ 6.920 տեղով և հիվանդանոցներ՝ 2.800 մահճակալով։

Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը 1958 թվականի համեմատությամբ կաճի երկու անգամ։ Նախատեսված է գցել 10 հազար հեկտար խաղողի՝ և 5.210 հեկտար պտղատու նոր այգիներ։

Ջրատնտեսական շինարարության գծով նախատեսված է ոռոգելի դարձնել 32,6 հազար հեկտար նոր հողեր և ջրովի դարձնել 95 հազար հեկտար արոտավայրեր։

Մեր ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորները ջանք չեն խնայում այս լուրջ խնդիրները կենսագործելու համար։

Քաղաքական մեծ ակտիվության պայ-

մաններում են աշխատավորների միջազգային տոնը դիմավորում սոցիալիստական երկրների աշխատավորները։ Մայիսի 1-ի օրը սոցիալիզմի երկրների ժողովուրդները նշում են նորանոր աշխատանքային հաջողություններով։ Սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով ընթացող ժողովուրդների համերաշխությունն ու համախմբվածությունը սոցիալիզմի լագերը դարձրել են խաղաղության և բոլոր ժողովուրդների անվտանգության անխորտակելի պատվար։ Սոցիալիստական երկըրների համագործակցության փառավոր, խոշորագույն նվաճումները ցուցադրում են սոցիալիզմի գերազանցությունն իր դարն ապրած կապիտալիզմի նկատմամբ։

Շարունակվում է բուռն կերպով զարգանալ սոցիալիստական երկրների ինդուստրիալ հզորությունը։ Այս բնագավառում նշանակալի հաջողություններ են ձեռք բերել Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Հունգարիայի, Բուլղարիայի աշխատավորները։ Ժողովրդական Կորեայի արդյունաբերությունը այժմ 35 օրում տալիս է այնքան արտադրանք, որքան արտադրվում էր ամբողջ 1944 թվականի ընթացքում։

Չնայած ԱՄՆ-ի իմպերիալիզմի կողմից ստեղծված տնտեսական բլոկադայի դժվարություններին, ռևոլյուցիոն Կուբայի ար-



դյունաբերությունը նախառևոլյուցիոն վերջին տարվա՝ 1958 թվականի համեմատությամբ, աճել է 31,3 տոկոսով։ 1948 թվականի համեմատությամբ ժողովրդական Ռումինիայի արդյունաբերության համախառն արտադրանքը աճել է 8 անգամ։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում սկըսված են մի շարք խոշոր քիմիական ձեռնարկությունների շինարարական աշխատանքները։

Ընդհանուր առմամբ սոցիալիզմի երկըրների արդյունաբերական արտադրանքի ծավալը 1962 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, աճել է 70 տոկոսով, իսկ կապիտալիստական երկրներինը՝ միայն 25 տոկոսով։

Աննախընթաց վերելք է ապրում սոցիալիստական երկրների գյուղատնտեսությունը։

Ավելի է ամրապնդվում սոցիալիստական երկրների ժողովրդական մասսաների համախմբվածությունը մարքս-լենինյան պարտիաների շուրջը։ 1962 թվականի նոյեմբերին գումարված Բուլղարական կոմունիստական պարտիայի XIII համագումարը վառ կերպով դրսևորեց, որ կոմունիստների վարած քաղաքականությունը վայելում է ժողովրդական լայն մասսաների վստահությունը։

Աշխատանքային մեծ նվաճումներով դիմավորեցին աշխատավորները Հունգարական սոցիալիստական բանվորական պարտիայի XIII համագումարը։

Համաժողովրդական վերելքի և խանդավառության պայմաններում ընթացավ Գերմանիայի սոցիալիստական միասնական պարտիայի VI համագումարի նախապատրաստական աշխատանքները։

«Այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, վաղը աշխատել ավելի լավ, քան այսօր»,— ահա սոցիալիստական երկրների աշխատավորների լոզունգը։

Իսկական եղբայրական փոխադարձ հարաբերություններ են հաստատվել սոցիալիստական երկրների միջև։ Համատեղ ջանքերով Տնտեսական փոխադարձ խորհրդի անդամ-պետությունները միայն 1962 թվականին կառուցեցին մի շարք խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։ Սոցիալիստական երկրների միջև մեծ չափով ավելացել է ապրանքաշրջանառությունը։

Բազմապատկվում են սոցիալիստական համագործակցության երկրների՝ տնտեսական կապերը ամբողջ աշխարհի հետ։ Հունգարիան անցյալ տարի առևտուր էր կատարում շուրջ 90 երկրների հետ։ Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի 36 երկրներում աշխա-



տում են Լեհաստանի կողմից սարքավորված 200 գործարաններ։ Ռումինական ապրանքներն այժմ հայտնի են աշխարհի 80 երկրներում։

Սոցիալիստական երկրները մեծ հաջողությունների են հասել ժողովրդական կրթության, գիտության ու կուլտուրայի զարգացման գործում։

Շշմեցուցիչ հաջողություններ է ձեռք բերել Կուբան ժողովրդական կրթության բնագավառում։ Բավական է ասել, որ միայն 1961 թվականին Կուբայում ամբողջապես վերացվեց անգրագիտությունը, իսկ այժմ ԱՄՆ-ում կան մոտ 8 միլիոն անգրագետներ։ Այս թիվը ավելի շատ է, քան Կուբայի ամբողջ բնակչությունը։

Տարեցտարի կյանքը հաստատում է, որ սոցիալիզմը ժողովուրդների ուղին է դեպի ազատություն ու երջանկություն։ Այդ ճանապարհով ընթացող բոլոր ժողովուրդների ձեռք բերած հսկայական նվաճումները մարքս-լենինյան ամենահաղթ, աշխարհաշեն ուսմունքի ճշմարտացիության ու կենսունակության ամենավառ վկայությունն են։

Բայց այդպես չէ կապիտալիստական երկրներում։ Եթե մեզ մոտ և ժողովրդա-դեմոկրատական երկրներում ամեն ինչ արվում է մարդու համար՝ հանուն նրա բարօրության

ու երջանկության, ապա կապիտալի երկրներում միլիոնավոր մարդիկ անգթորեն կեղեքվում են։ Կապիտալիզմը նրանց դատապարտել է մշտական սովի ու աղքատության, իրավազրկության ու գործազրկության։

Տնտեսագետների հաշվումներով այժմ կապիտալիստական աշխարհում մոտ մեկ միլիարդ մարդ մշտապես սովի է ենթարկված։ Անգամ այնպիսի հարուստ իմպերիալիստական երկրում, ինչպիսին Ամերիկայի Միացյալ Նահանգներն են, պրեզիդենտ Ջոն Քեննեդիի խոստովանությամբ «ամեն երեկո տասնյոթ միլիոն մարդ սոված պառկում է քնելու»։ Ի լրացումն պրեզիդենտի խոստովանության, ամերիկյան պրոֆմիութենական «Լեյբորս էկոնոմիկ ռեվյու» ամսագիրը հաղորդել է, որ «մոտ ութ միլիոն ամերիկյան աշխատավորներ իրենց գոյությունը պաշտպանում են ողորմության հաշվին, քառասուն միլիոն մարդ ապրում է կամ աղքատության մեջ կամ աղքատության եզրին»։

Կապիտալիզմի անբաժանելի ուղեկիցներն են նաև բնակչության անգրագիտությունը, բնակարանային ճգնաժամը, անուրախ մանկությունը, անապահով ծերությունը և այլն։

Ինչպես հայտնի է, ոչ սոցիալիստական երկրներում բնակչության թիվը հասնում է մոտ երկու միլիարդի։ Նրանցից 700 միլիոնը



մինչև այժմ մնում է լրիվ անգրագետ։ Թուրքիայի բնակչության 65 տոկոսը, Բոլիվիայի բնակչության 80 տոկոսը, Գվատեմալայի բնակչության 70 տոկոսը, Պորտուգալիայի բնակչության 40 տոկոսը անգրագետ է։

Ամերիկյան «Նեյշն» ամսագիրը հաստատում է, որ աշխարհում բնակարանային ամենասարսափելի պայմաններում է գտնվում կապիտալիստական խոշորագույն քաղաքի, Նյու-Յորքի բնակիչներից 2 միլիոն մարդ։ ԱՄՆ-ի այսպես կոչված դեմոկրատական պարտիայի ազգային կոմիտեի կոնսուլտատային խորհուրդը ընդունում է, որ հետնախորշերում ապրում են 22 միլիոն հասարակ ամերիկացիներ։

ԱՄՆ-ի հետնախորշերի շրջաններում երեխաների մահացությունը հասնում է 87 տոկոսի։ Այդ շրջանների բնակչության 70 տոկոսը տառապում է թոքախտով, մեծ թիվ են կազմում սպանություններն ու ինքնասպանությունները։

Նույնիսկ բուրժուական մամուլը գտնում է, որ բնակարանային շինարարության ներկա տեմպերը ԱՄՆ-ում հնարավորություն կտեղծեն 280 տարի հետո լիկվիդացնել հետնախորշերը։

Բնակարանային շատ ծանր պայմաններում են ապրում նաև Անգլիայի և Ֆրանսիա-

յի աշխատավորները։ Անգլիայում 14 միլիոն տներից 2.500-ը կառուցվել են 60—100 տարի առաջ, ավելի քան 2 միլիոնը 100 տարի առաջ։ Անգլիական պառլամենտի դեպուտատներից մեկը ասել է, որ անգլիական տունը ավելի մեծ մարդասպան է, քան ավտոմեքենան։ Նա այդ ասել է այն պատճառով, որ Անգլիայում խարխուլ տների փուլ գալու պատճառով հաճախակի դժբախտ դեպքեր են տեղի ունենում։

Ֆրանսիայում անընդհատ ավելանում են հետնախորշերը։ Նույն վիճակումն են գտնվում Ճապոնիան, Իտալիան, Արևմտյան Գերմանիան, Թուրքիան, Հունաստանը, լատինաամերիկյան և շատ ուրիշ կապիտալիստական երկրներ։

Կապիտալիստական երկրներում և հատկապես ԱՄՆ-ում աշխատավորներին հարկերի միջոցով թալանելը սովորական երևույթ է դարձել։ Վերջին քսան տարում ԱՄՆ-ում աշխատավորների վրա դրված հարկային բեռը ավելացել է 8 անգամ, Անգլիայում՝ 5,5 անգամ։ Ներկայումս ԱՄՆ-ում տասնյակ տեսակ հարկեր են գանձում բնակչությունից (ֆեդերալ. նահանգական, քաղաքային, եկամտային և այլն)։ Նույնիսկ ԱՄՆ-ում հաշմանդամներին ու ծերերին տրվող աղքատիկ թոշակից եկամտահարկ է գանձվում։



Այժմ արդեն ոչ ոքի համար գաղտնիք չէ, որ ԱՄՆ-ը և կապիտալիստական երկրները թալանելով աշխատավորներին ավելի ու ավելի են ծավալում սպառազինությունների մրցավազքը, կուտակում միջուկային զենք՝ ստեղծելով նոր պատերազմի սպառնալիք։

Այս տարի կապիտալիստական աշխարհում Մայիսի 1-ը նշվում է դասակարգային պայքարի հետագա աճման և կապիտալիզմի հակասությունների սրման պայմաններում։

Սովետական Միության և ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի հաջողությունները, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումը, ժողովրդական լայն մասսաների շրջանում կոմունիստական պարտիաների հեղինակության աճը, ռեֆորմիզմի գաղափարական կրախը ամբողջովին փոխել են դասակարգային պայքարի պայմանները հօգուտ աշխատավորության։ Այդ նույն ժամանակ, երբ սոցիալիզմի և խաղաղության լագերը աճում և ամրապնդվում է, կապիտալիստական սիստեմը գնում է դեպի կործանում։

Սակայն կապիտալիզմը իր դիրքերը կամավոր չի հանձնում։ Ձգտելով ամեն կերպ խեղդել ժողովրդական մասսաների պայքարը հանուն ազատագրության և լուսավոր ապագայի, մոնոպոլիստական բուրժուազիան

կանգնում է ավանտյուրաների, տեռորի, հակաբանվորական ռեպրեսիաների ճանապարհին, հաստատում է ֆաշիստական ռեժիմ։

Կապիտալիստական պետությունների կառավարությունները վարում են էկոնոմիկայի միլիտարիզացման քաղաքականություն, որը ավելի է ուժեղացնում աշխատավորների շահագործումը։ Խրոնիկական մասսայական գործազրկությունը դարձել է կապիտալի մի շարք երկրների ազգային թշվառությունը։

Այսօր կապիտալիստական երկրներում գործադուլային շարժումը ընդունել է նոր թափ։ Միայն 1961 թվականին գործադուլներին մասնակցել է 60 միլիոն մարդ, որը մեկ և կես անգամ ավելի շատ է, քան 1958 թվականին։

Դասակարգային պայքարի հզոր վերելքին նպաստում է կոմունիստական և բանվորական պարտիաների աճող հեղինակությունը։

Բանվորական շարժման պատմության մեջ նոր վառ էջ բացեց Ֆրանսիայի բանվոր դասակարգը։ Ֆրանսիական ածխահատների գործադուլը, որը ընդունեց համաֆրանսիական բնույթ, խոշոր հարված հասցրեց իր դարն ապրած կապիտալիզմի հիմքերին։ Մասսայական դասակարգային պայքար է ծավալված ԱՄՆ-ում, Իտալիայում, Անգլիա-



յում, Հունաստանում, Ճապոնիայում և կապիտալիստական շատ այլ երկրներում։ Մեծ թափով գործադուլային շարժումները ընդգրկել են ամբողջ Լատինական Ամերիկան, որտեղ բանվոր դասակարգը, ամբողջ աշխատավորները համառորեն պայքարում են աղքատության դեմ, հյուսիս-ամերիկյան մոնոպոլիաների դեմ։ Լատինական Ամերիկայում ծավալված գործադուլային շարժումը վկայում է այն մասին, որ այնտեղ էլ հողը այրվում է ամերիկյան մոնոպոլիաների և ժողովուրդների ազգային շահերի դավաճանների ոտքերի տակ։

Դասակարգային աճող մարտերը աշխատանքի և կապիտալի միջև գլխովին ջախջախում են բուրժուական պրոպագանդայի կեղծ փաստարկումներն այն մասին, թե իբր կապիտալիստական աշխարհում տիրում է «դասակարգային համերաշխություն»։ Ոչ մի կերպ չի կարելի սքողել շահագործողների և շահագործվողների միջև եղած անհաշտելի հակասությունները։

Միջազգային բանվոր դասակարգը ավելի ակտիվորեն է պայքարում հանուն կապիտալիստական շահագործման ոչնչացման, հանուն իր գաղափարների հաղթանակի։

Մայիսի 1-ի օրը այս տարի նշվում է

ազգային-ազատագրական շարժման հզոր վերելքի պայմաններում։ Ազգային-ազատագրական շարժման կործանարար հարվածներից խորտակվում են գաղութային խայտառակ սիստեմի վերջին ամրոցները։ 40-ից ավելի պետություններ դեն են շպրտել գաղութատերների լուծը։ Ավելի է բորբոքվում ազգային-ազատագրական շարժման կրակը Անգոլայում, Մոզամբիկում։

Ոգևորված ռևոլյուցիոն Կուբայի օրինակով փոթորկվում է լատինա-ամերիկյան մայր ցամաքը։ Կուբայական ժողովրդի հերոսական պայքարը վաստակել է աշխարհի բոլոր ժողովուրդների համակրանքը և օգնությունը։

Սովետական մարդիկ, ինչպես և ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը ակտիվորեն պաշտպանում են ժողովուրդների պայքարը հանուն ազգային անկախության և ազատագրության։

ՍՄԿՊ XXII համագումարը նոր, վիթխարի խնդիրներ առաջ քաշեց մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման համար։

ՍՄԿՊ նոր Ծրագրում առաջ քաշված ստեղծագործ պլանների կենսագործման համար սովետական մարդկանց հարկավոր



է խաղաղություն։ Սովետական մարդկանց բարձրագույն նպատակն է մարդկության կյանքից իսպառ վերացնելու պատերազմները։ Խաղաղասիրությամբ և բոլոր ժողովուրդների միջև բարեկամությամբ է համակված սովետական կառավարության արտաքին քաղաքականությունը՝ տարբեր հասարակական կառուցվածք ունեցող պետությունների խաղաղ գոյակցության, ժողովուրդների խաղաղության և անվտանգության ամրապնդման, նրանց ազատության և անկախության հարգման, տնտեսական և կուլտուրական լայն կապերի հաստատման քաղաքականությունը։

Այժմ խաղաղության ուժերը գերազանցում են պատերազմի ուժերին։ Ստեղծվել են ռեալ հնարավորություններ պատերազմի խափանման համար։ Դրան հասնելու ճանապարհն ,է ընդհանուր և լրիվ զինաթափումը, որին խոչընդոտում են իմպերիալիստական խոշոր պետությունները ԱՄՆ-ի գլխավորությամբ։

Մայիսի 1-ի օրը Սովետական Միության բոլոր աշխատավորները նորից երկրագնդի աշխատանքի բոլոր մարդկանց հղում են իրենց ջերմ ողջույնը։ Սովետական մարդիկ ցանկանում են ժողովուրդներին, բանվոր

դասակարգի պայքարին մեծ հաջողություններ հանուն ազգային ազատագրության, հանուն խաղաղության, հանուն դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության:

Թող այդ պայքարում ավելի ամրապնդվի ամբողջ աշխարհի աշխատավորների միասնությունն ու համերաշխությունը: Թող մեր ամբողջ մոլորակի վրա այս տոնական օրերին ավելի ուժգին հնչի աշխատանքի մարդկանց լոզունգը՝ կեցցե՛ Մայիսի 1-ը՝՝ աշխատավորների միջազգային համերաշխության օրը:





# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Մայիսի 1-ը աշխատավորների միջազգային համերաշխության օրն է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Նամակ «Հյուսիսային միությանը». Երկեր, հատոր 6, էջ 195—208, Հայպետհրատ, 1949:

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մայիսի մեկը, Երկեր հատոր 7, էջ 243—248, Հայպետհրատ, 1949:

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մայիսի մեկը, Երկեր, հատոր 8, էջ 439—444, Հայպետհրատ, 1949:

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիզմի պատմական հաղթանակները, ՍՄԿՊ XXII համագումարում պարտիայի Ծրագրի մասին տված զեկուցումից, էջ 5—24, Հայպետհրատ, 1961:

## 2. Մամուլի օրը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր բերքի բնույթի մասին, Երկեր, հատոր 28, էջ 106—109, Հայպետհրատ, 1951:

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները, Երկեր, հատոր 27, էջ 237—258, Հայպետհրատ, 1951:

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պարտիական կազմակերպություն և պարտիական գրականություն, *Երկեր, հատոր 10, էջ 39—46, Հայպետհրատ, 1949։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական մամուլը պետք է լինի ամենաուժեղ և ամենամարտական մամուլը, *ելույթ սովետական ժուռնալիստների ընդունելությանը Կրեմլում 1959 թվականի նոյեմբերի 14-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 18-ի համարում։*

Վ. ԿԱՐՊԻՆՍԿԻ— Լենինը որպես խմբագիր, *«Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին», մաս 1-ին, Հայպետհրատ, 1957։*

Բոլշևիկյան «Պրավդա» թերթը, *ՍՄԿՊ պատմություն, էջ 189—197, Հայպետհրատ, 1959։*

## 3. Բարձր ցուցանիշներով կատարենք ստանձնած պարտավորությունները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Երկրի տնտեսական հզորության բարձրացման համար մղվող պայքարը։ Յոթնամյա պլանը կարևոր էտապ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Ժամկետից շուտ կատարել յոթնամյակի հինգերորդ տարվա առաջադրանքները, *ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 20-ի համարում։*



Հայկական ՍՍՌ կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների, սովխոզների բանվորների և բանվորուհիների, գյուղատնտեսության մասնագետների և բոլոր աշխատողների 1963 թվականի սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 7-ի համարում։*

Հայկական ՍՍՌ արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի աշխատողների սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 22-ի համարում։*

## 4. Պետական և աշխատանքային կարգապահության պահպանումը սովետական յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում, առանձին գրքույկ, Հայպետհրատ, 1963 թ.։*

Պարտիական և պետական վերահսկողության լենինյան սկզբունքները, *հոդված, տպագրված ՀԿՊ Կենտկոմի «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 3-րդ համարում։*

## 5/. Սովետական գրականությունը և արվեստը ծառայում են ժողովրդին

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Բարձր գաղափարայնությունը և գեղարվեստական վարպետությունը սովետական գրականության և արվեստի մեծ ուժն է, *ճառ արտասանած գրականության և արվեստի գործիչների հետ պարտիայի ու կառավարության ղեկավարների հանդիպման ժամանակ, 1963 թվականի մարտի 8-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 12-ի համարում:*

Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ— Ժողովրդի հանդեպ գեղարվեստագետի պատասխանատվության մասին, *ճառ, արտասանած գրականության և արվեստի գործիչների հետ պարտիայի ու կառավարության ղեկավարների հանդիպման ժամանակ, 1963 թվականի մարտի 7-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 13-ի համարում:*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, ընկեր Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին, *Հայաստանի ստեղծագործական ինտելիգենցիայի ակտիվի 1963 թվականի մարտի 29-ի ժողովի նամակը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 30-ի համարում:*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ.— Գաղափարական աշխատանքը բարձրացնել նոր խնդիրների մակարդակին, *ճառ, արտասանած ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի ակտիվի ժողովում 1963 թվականի մարտի 29-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 2-ի համարում:*

ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ— Միշտ ժողովրդի հետ, ժողովրդի համար, *ելույթ ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի ակտիվի ժողովում 1963 թվականի մարտի 29-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 31-ի համարում:*






Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству промышленностью и строительством

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству сельскохозяйственным производством

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 8

## 1963

ՎՖ 09959 Պատվեր 286 Տիրաժ 8419

Հանձնված է արտադրության 3/IV 1963 թ.
Ստորագրված է տպագրության 9/IV 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության 11 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.